ւակաՆ Ա. եւ Բ. ատեաՆՆերէՆ՝ 9700: Այս թղթածրարՆերուՆ պարուՆակած արժէքը՝ 4 միլիոՆ ոսկի կ'ենթադրուի:

ԻրաւակաՆ Գ. ատեաՆէՆ այրած եՆ 500,000, ԻրաւակաՆ Է. եւ Զ. ատեաՆՆերէ ալ՝ 835,000 թղթածրարՆեր:

Այրած եՆ Նաեւ.— ՍՆաՆկութեաՆ Ա. եւ Բ. ճիւղերէՆ՝ 265, Սուլթան Ահմէտի դատարաՆէՆ՝ 16,969 իՆրայի պաշտոՆատուՆերէՆ՝ 41,000 իՆչպէս Նաեւ վճռաբեկիՆ որոշումՆերուՆ վերաբերեալ տետրակՆերը եւ արձաՆագրութիւՆՆերը:

ՔՆՆութիւՆՆերը կը շարուՆակուիՆ, հրդեհիՆ պատասխաՆատուՆերը ճշդելու համար: ՎիՆաբաՆութեաՆց պահուՆ, երեսփոխաՆՆերէՆ մէկը պոռաց.

*— Պատիժը պէտք էր տալ աղէտին վայրը, պատասխանատուները պէտք է լինչի ենթարկուէին, կրակին մէջ նետուէին:*

## Պայոնի դրամատան խայտառակութիւնները

*Ոստիկանութիւնը մէկ շաբաթէ ի վեր խիստ քննութիւններ կը կատարէ, երեւան հանելու համար Պայոնի «Քաղաքապետական Վարկ» դրամատան գաղտնիքները: Այս դրամատունը 20 միլիոնի երաշխաւորութեան փոխարէն 400 միլիոնի գանձատոմս հանած է, ահագին վնաս պատճառելով մանր աւանդապահներու: Արդէն իսկ բանտարկուած է հիմնադիրներէն Պ. Թիսիէ, բայց բուն պատասխանատուն կը համարուի Ռուս մը, Սավիցքի: Կեղծ մուրհակները ծախուած էին Փարիզի, Լիոնի եւ ուրիշ կեդրոն քաղաքներու մէջ:*



## Հ. Յ. Դ.

ԱՆԻԷՌ - ՊՈՒԱՔՈԼՈՆՊԻ Վիշապ ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ իրիկուՆ, ժամը 8·30ին, ՊէՔօՆի ծաՆօթ հաւաքատեղիՆ: Ներկայ կ'ըլլայ ընկ. *ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ*: Բոլոր ընկերՆերու Ներկայութիւնը պարտաւորիչ է:

## Ընկերահաւաքական խնջոյք

կազմակերպուած Հ. Յ. Դ. ԱՆԻԷՌ - ՊՈՒԱՔՈԼՈՆՊԻ

«ՎԻՇԱՊ» ենթակոմիտէին կողմէ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2·30ին

**Salle de la Comète, Place de la Comète, Asnières**

Գեղարուեստական բաժին, երգ, պար եւայլն:

*Կը հրաւիրուին քոյր կոմիտէներու ընկերները:*

*Հաղորդակց. միջոց.— Կար Սէն Լազարէն առնել շոգեկառք եւ իջնել Անիէռի կայարանը: Մատըլէնէն առնել օթօպիւս CI/45 եւ իջնել Փլաս տը լա Քոմէթ:*

### ՀԱՑՈՑ ՀԱՅՐԻԿԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ՅուՆուար 6իՆ երեկոյեաՆ ժամը 8իՆ, ՊրէպաՆ Մարսէյէզի ընդարձակ սրահիՆ մէջ, տեղի պիտի ուՆեՆայ Մարսէյլի ՎասպուրականցիՆերու կազմակերպած երեկոյթը, ՆուիրուՆած ԽրիմեաՆ Հայրիկի յիշատակիՆ:

Կը խնդրուի չի խաչաձեւել:

*ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ*

## ՎԱՆԱՏՈՒՐԻ ՏՕՆԸ

### Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԸ

ԿԸ ՏՕՆԷ ԱՄԱՆՈՐԸ

7 ՅուՆուար, կիրակի կէսօրէ վերջ

**150 Route d'Orléans, BAGNEUX (Seine)**

*(Փորթ տ'Օրլէանէն առնել 88 թիւ Թրամուէյը, իջնել Պանեօ)*

ՍեղաՆաՆառեր, զուարճութիւՆ, երգ ու Նուագ: ԱՆուշ ապուր, պտուղի բուրգեր, թէյ ու կարկաՆդակ:

*Տղաքներու մասնակցութեան համար 5 ֆրանք:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ.Կ. Խաչի Փարիզի մասՆաճիւղը հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնէ Տիկին Ս. ԲէզլարեաՆին որ իր Նախաձեռնութեամբ թանկագին օժանդակութիւն բերաւ Կ. Խաչի պազարին եւ Նիւթապէս եւս Նպաստեց անոր յաջողութեան:

ՆոյՆպէս իր խորին շնորհակալութիւնները Պ. Պ. Սուրէն ՍահակեաՆի, ՆատիրեաՆի եւ ԳաՆտիլեաՆի որոնք իրենց Նուէրներով մեծապէս օգնեցին պազարին կոկիկ հասոյթ մը ապահովելու:

*Վարչութիւն*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Մ. Բ., Լապէկիւտ.— Կը խնդրուի դրկել:

Ա. Ժ., Քոնսթանցա.— ՆոյՆպէս:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Վիէնի Ատանայի հայրենակցական միութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ հայրենակից Վարդան ՄաՔինաճեանի եւ պարագաներուն իր մօր՝ ԱՐՓԻՍԱԿ ՄԱՔԻՆԱՃԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ:

Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13e)
Imprimerie A. DER (AGOPIAN)

Տէր եւ Տիկ. Սերովբէ Պախթիյարեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Միհրան Պախթիյարեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Յակոբ Սէմէրճեան եւ զաւակը (Պէյրութ), Տէր եւ Տիկին Գէորգ Քացախեան եւ զաւակունք (Պէյրութ), Տէր եւ Տիկին Օննիկ Տօնիկեան եւ զաւակը (Պէյրութ), Այրի Տիկին Հ. Նազրճեան եւ զաւակունք (Ռումանիա), Այրի Տիկին Ի. Նազրճեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Յ. Պախթիյարեան եւ զաւակունք (Զահլէ), Տէր եւ Տիկին Գ. Պախթիյարեան եւ զաւակը, Օր. Հ. եւ Պ. Կ. Պախթիյարեան (Ռումանիա), ինչպէս նաեւ Պուլտուքեան, Ճամուզեան, Նէտիգարտաշեան, Տազէսեան, Ըպրըքճեան, Պօղոսեան, Նազուպեան, Թէլլիեան, Պենլեան, Տամլամեան, Տէմիրճեան, Ճամճեան, Տէր Աբրահամեան ընտանիքները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր եւ ազգականուհիին՝

## ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԷՐՄՈՆԻԱ ՊԱԽԹԻՅԱՐԵԱՆԻ

(Ծնեալ Նազրճեան 1857ին)

դառնաղէտ մահը:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Փարիզի Հայոց Եկեղեցիին մէջ, 15, Rue Jean Goujon, հանգուցեալին մարմինը պիտի ամփոփուի cimitière Parisienի (Bagneux) իրենց ընտանեկան դամբարանին մէջ:

Բնակարանի հասցէ.— **21bis, Route St. Lau, Deuil (S. et O.)**.

## *Ընկերահամակրական խնջոյք*

կազմակերպուած Հ. Յ. Դ. ԱՆԻԷՌ – ՊՈՒԱՔՈԼՈՆՊԻ

«ՎԻՇԱՊ» ենթակոմիտէին կողմէ

Այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին

**Salle de la Comète, Place de la Comète, Asnières**

Գեղարուեստական բաժին, երգ, պար եւայլն:

*Կը հրաւիրուին քոյր կոմիտէներու ընկերները:*

*Հաղորդակց. միջոց.— Կար Սէն Լազարէն առնել շոգեկառք եւ իջնել Անիէռի կայարանը: Մառըլէնէն առնել օթօպիւս CI/45 եւ իջնել Փլաս տը լա Քոմէթ:*

## ՇՔԵՂ ՑԵՐԵԿՈՅԹ ԵՒ ՏՕՆԱԾԱՌ

**Ֆ. Հ. Կ. ԽԱՉԻ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ**

*Այսօր կիրակի կէս օրէ վերջ, ճիշդ ժամը* **2.30ին**

**Salle des Fêtesի մէջ, (Rue du Casino), Enghien**

*Կը խօսի Տիկին* Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

*Կը մասնակցին՝* կոմիտաս երգչախումբը, *Տիկիններ՝* Զ. Ընքապապեան (*դաշնակ*), Ա. Գեւոնեան (*մեներգ*), Ա. Խէրպէկեան (*դաշնակ*): *Օրիորդներ՝* Զ. Շահիլաւեան (*ջութակ*), Ա. Նալպանտեան (*դաշնակ*): *Պարոններ՝* Ա. Քէչէճեան (*մեներգ*), Ա. Գմբէթեան (*արտասանութիւն*):

**ԿԱՂԱՆԴԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ** (Հայրենի պատկեր եւ տօնածառ)

Տղաքներու մասնակցութեան համար՝ մուտք 5 ֆր., փոքրերու՝ 3 ֆր.

*Շոգեկառքը* Gare du Nord*էն կը մեկնի կէս օրէ վերջ ժամը 13,46ին, 13,56ին, և 14,25ին: Trinitéէն առնել 54 թիւ հանրակառքը և իջնել Անկէն:*

## ԼԻԽՍԻ ՍԵԽՈՒՄԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

9 Յունուար երեքշաբթի իրիկուն ժամը 9.15ին

**SALLE CHOPIN (PLEYEL)** **8 RUE DARU, PARIS (8)**

Հայ. ժողովրդական եւ եւրոպական երգեր

Դաշնակով կը մասնակցի **M. A. LABINSKY, chef d'Orchestre de l'Opéra Russe**

*Տոմսերը՝* **15, 10** եւ **5** *ֆրանք*

## ՎԱՆԱՏՈՒՐԻ ՏՕՆԸ

**Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԸ**

**ԿԸ ՏՕՆԷ ԱՄԱՆՈՐԸ**

Այսօր կիրակի կէսօրէ վերջ

**150 Route d'Orléans, BAGNEUX (Seine)**

(*Փորթ տ'Օրլէանէն առնել* 88 *թիւ թրամուէյը, իջնել Պանեօ*)

Սեղանանառեր, զուարճութիւն, երգ ու նուագ: Անուշ ապուր, պտուղի բուրգեր, թէյ ու կարկանդակ:

*Տղաքներու մասնակցութեան համար 5 ֆրանք:*

## ՏՕՆԱԾԱՌ

*կազմակերպուած* Վէնսէնի Հայ Կրթասիրաց *երկսեռ միութեան կողմէ*

Մասնակցութեամբ Վէնսէնի Հ. Մ. Ը. Մ.ի Սկաուտներուն

*Այսօր կիրակի կէսօրէ վերջ*

**Salon Gayի մէջ 10 Avenue de Paris, Vincennes**

Խմբերգ եւ արտասանութիւններ մանկապարտէզի աշակերտներու կողմէ

*Կը մասնակցին՝* Թատրոն Աբգար, *ֆրանսացի հռչակաւոր կատակերգակ մը:*

Ձաւեշտ եւ կենդանի պատկեր սկաուտներու կողմէ: Մուտք՝ 5 ֆրանք




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13e)

Թերթերը երէկ հրատարակեցին Սթավիցքիի կնակ – նամակներէն մէկը, որ ուղղուած է իր մանչ զաւակին եւ գրուած՝ հայրական խանդաղատանքով: Այդ նամակին մէջ ալ, ուղղակի խօսք չկայ անձնասպանութեան մասին, այլ կ'ըսէ «անհետանալ»:

Սպաննուած ըլլալու խնդիրը Երեսփ. Ժողովին մէջ ալ յիշուած ըլլալով, վարչապետը ուժգնօրէն բողոքեց: Թերթերը կը գրեն թէ այն տասը բժիշկները որ դիադննութիւն կատարած էին, համաքարար ցեկոյց մը պիտի հրատարակեն, որպէսզի միանգամ ընդ միշտ պարզուի թիւրիմացութիւնը:

Կ'ըսուի թէ Սթավիցքի 1930ին երեք միլիոն ֆրանքի ապահովագրած է իր կեանքը, ի նպաստ իր կնոջ, եւ վճարելի՝ նոյն իսկ անձնասպանութեան պարագային:

## Ո՞վ կեղծեց անցագիրը...

Գերխաչագողը կասկածի տակ ըլլալով, անգամ մը կեղծ անցագիր մը ճարած էր, որ կը պատկանէր նախկին կռփամարտիկ Նիէմէնի:

Այս վերջինը տաջի օր հարցաքննուեցաւ Ապահովութեան Տեսչութեան մէջ: Յայտարարեց թէ ֆրանսական հպատակութիւնը ընդունած Լեհ մըն է եւ ախոյեան: Ցեառյ մարզանքի ուսուցիչ դարձած ըլլալով, ամէն տասը դաս կուտար Սթավիցքիի, զոր ճանչցած էր բարեկամի մը միջոցաւ: Խօսակցութեան մը առեն, Նիէմէն ըսաւ Սթավիցքիի.

— «Ոստիկանական Տեսչութեան կ'երթամ, նորոգելու համար անցագիրս որ մաշելով պատռած եւ սեւցած է»:

Այն առեն Սթավիցքի պատրաստակամութիւն յայտնեց այդ գործը կատարելու եւ կռփամարտիկը անոր յանձնեց իր անցագիրը, ինչպէս եւ երկու լուսանկար: Այդ օրէն ի վեր, այլ եւս խօսք դարձած չէր այս գործի մասին: Արդ, այս անցագիրը գտնուեցաւ Սթավիցքիի քով, Նիէմէնի անունով, բայց իր լուսանկարով...

«Իւմանիթէ» եւ «Փօփիւլէռ», այս առթիւ ուղղակի կ'ամբաստանեն Ոստիկանութեան վերատեսուչը, Պ. Քիափ:

## Ուրիշ լուրեր

Երեսփ. Ժողովի ձեռամբարձ քուէարկութեամբ ջնջեց Փարիզի երեսփոխան Պ. Պոնոռի անձեռնմխելիութիւնը: Քուէարկութեան առեն, երեսփոխանը յայտարարեց թէ ինք միայն գործի բերումով կապ ունեցած է Սթավիցքիի հետ, իբրեւ փաստաբան եւ այս՝ երեսփոխան ըլլալէ առաջ:

⁂ Տիւպառի, «Լա Վօլոնթէ»ի տնօրէնը եւ Քամիյ Էմառ, «Լա Լիպէռթէ»ի նախկին տնօրէնը, Պայոն փոխադրուելով, բանտարկուեցան: Հարցաքննութիւնը պիտի կատարուի այսօր: Խուզարկութիւնները եւ քննութիւնները կը շարունակուին ամէն ուղղութեամբ:

⁂ Սթավիցքիի մեռած օրը վրան գտնուեցաւ 32,500 ֆրանքի գումար մը: Գոյքերը փոխադրուած են Պայոն:

## Պուլկարիա չուզեր կաշկանդուիլ

Պ. Մաքսիմոս, Յունաստանի արտաքին նախարարը, հետեւեալ յայտարարութիւններն ըրաւ, Պ. Մաքտոնըլտի հետ խօսակցելէ յետոյ.

— Շատ գոհ եմ կարծիքներու փոխանակութենէն: Մեր գլխաւոր նպատակն էր Պալքանեան ոչ – յարձակման դաշինքի խնդիրը: Խօսեցանք նաեւ տնտեսական խնդիրներու մասին:

Իսկ Սոֆիայէն կը հեռագրեն.— Թերթերու մեծ մասը խօսելով Պ. Մաքսիմոսի յայտարարութեանց վրայ, գիտել կուտան թէ Պուլկարիա չի կրնար յարիլ դաշինքի մը որ կը ձգտի անխախտ պահել Պալքաններու հողային զոյավիճակը, նոյն իսկ առանց ճանչնալու Նէօյիի դաշնագրով իրեն խոստացուած իրաւունքները,— ինք դէպի Եգէական ծով:

## Ֆրանքեւռուս համաձայնութիւնը

Խորհրդային թերթերը սիւնակներ կը նուիրեն Ֆրանսայի հետ կնքուած առեւտրական դաշնագրին, գոհունակութիւն յայտնելով: Այս դաշնագիրը կը համարուի երկրորդ շրջանը ֆրանքեւխորհրդային մերձեցման եւ փոխադարձ վստահութեան: «Իզվէստիա», կառավարութեան պաշտօնաթերթը, կը գրէ թէ Ֆրանսայի եւ Խ. Միութեան յարաբերութիւնները կը զարգանան երեք գլխաւոր ուղիներով,— քաղաքական, տնտեսական եւ մշակութային: «Փրավտա»ն բացատրելով գոյացած համաձայնութեան քաղաքական հանգամանքը, գիտել կուտայ թէ Ֆրանսան մէկն է այն գլխաւոր գրամատէր պետութիւններէն որոնց քաղաքականութիւնը կը ձգտի արգիլել զինեալ ընդհարումները:

# ԹԷՅԱՍԵՂԱՆ

ՀԱՈՒԸՐՍ ԳԱՐԱԿէՕԶԵԱՆ ՀՕՄԻ ՆԱԽԿԻՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ
ԻՐ ՀԻՄՆՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ԹԷՅ - DANSANT ԿՈՒՏԱՅ

Այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 3-7

ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆի շքեղ եւ ընդարձակ սրահներուն մէջ.

13 Rue Pièrre Curie, Kr.– Bicètre, Մէթրօ՝ Porte d'Italie

Գեղարուեստական բաժին, օրքէսթր Սանտրոսեան եւ սիրուն անակնկալներ

## Գեղարուեստական ցերեկոյթ եւ soiradan

Փարիզի Հարաւային Շրջանի Յառաջդիմասիրաց Միութեան կողմէ
Այսօր կիր. ժամը 2.30ին, 15 Route D'Orléans ի (Bagneux) սրահին մէջ
100է աւելի երկսեռ աշակերտներ պիտի արտասանեն գեղեցիկ կտորներ, եւ պիտի երգեն կոմիտասէն զանազան ժողովրդական երգեր ղեկավարութեամբ Պ. ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆի:
Տեղի պիտի ունենայ թիթեռնիկի պարը:
Կը նուագէ Թառխստ Արգար:
Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները՝ որոնք կ'ուզեն վայելել մանուկներու հայ ապրումները:
Տոմսերու մասնակցութեան համար 2 ֆրանք մուտք:
Փօրթ տ'Օրլէանէն առնել 88 թիւ թրամուէյը եւ իջնել Պանեէօ:

## ՑԵՐԵԿՈՅԹ Ի ՊԱՏԻՒ Պ. Լ. ԲԱՇԱԼԵԱՆԻ

ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
Կիրակի 21 յունուար, կէսօրէ վերջ ժամը 2·30ին
Միւթիւալիթէի I եւ Y սրահներուն մէջ
Կը նախագահէ Պ. Գ. ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ

Գեղարուեստական մաս.—

**Raymond Worms.**— (Violoncelliste, soliste des grands concerts), **André Lermyte.**— (Pianiste des concerts symphoniques Pasdeloup), **Maurice Blondel.**— (Violoniste, soliste des concerts symphoniques Pasdeloup):

Կը խօսին.—

ՏԻԿԻՆ ԱՆԱՅԻՍ՝ Լ. Բաշալեանի գրական գործունէութիւնը, Ռ. ԶԱՐԴԱՐԵԱՆ՝ «Ցեղին ձայնը» (արտասանութիւն), Ա. ՉՕՊԱՆԵԱՆ՝ Լ. Բաշալեանի հանրային գործունէութիւնը, Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ՝ Հ. Գ. Ընկերակցութեան կողմէ եւ Պ. Լ. ԲԱՇԱԼԵԱՆ:

Ընկերակցութեան բոլոր անդամները եւ համակիրները կը հրաւիրուին ցերեկոյթին:

Հանդէսին եւ գինեձօնի ծախսերու մասնակցութեան համար կը գանձուի 5 ֆրանք:

Մասնաւոր հրաւիրագիր ղրկուած չէ:

---

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

կը տօնէ Ֆր. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը ԱԼՖՈՐՎԻԼԻ, ԱՌՆՈՒՎԻԼԻ, ԱՆԿԷՆԻ, ԻՍԻԻ եւ ՓԱՐԻԶԻ մասնաճիւղերու մասնակցութեամբ

Գեղարուեստական բաժինը կազմուած է
ՄԻ ՄԻԱՅՆ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ԴԵՐԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՄԲ
Ներկայացում, պար, երգ, արտասանութիւն եւ
ՇԱՐԺԱՆԿԱՐ
Այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին
Փարիզ, **JEAN GOUJON**ի սրահին մէջ,
**8 rue Jean Goujon** (եկեղեցիին փողոցը)
ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է բոլոր փոքրերուն, մեծերը կը վճարեն միմիայն 2 ֆրանք ծախքերու մասնակցութեան համար
Տղոց կը բաժնուի նախընթրիք եւ պտուղ

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Առնուվիլի Վ.արագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այսօր. կիրակի, հոգեհանգիստ պիտի կատարուի ՂԵՒՈՆԴ ԵՊՍԿ. ԴՈՒՐԵԱՆԻ յիշատակին:

Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13e)
Imprimerie A. DER (AGOPIAN)

*Նկատի առնելով բոլոր մեղմացուցիչ պարագաները, դատարանը ազատ արձակեց ամբաստանեալը, բայց պայման դրաւ որ երաշխաւորութիւն ներկայացնէ եւ երեք տարի զգուշանայ յանցապարտ արարքներէ :*

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԻՏԱԼԻԱ ԵՒ ՌՈՒՄԱՆԻԱ չպիտի վերանորոգեն բարեկամութեան դաշինքը, որ կնքուած էր 1926ին եւ որուն պայմանաժամը լրացաւ յունուար 18–ին : Իտալիա պահանջած էր որ չէզոքութեան մասին տրամադրութիւն մը աւելցուի, բայց Ռումանիա մերժած է :

30,000 ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆԵՐ ձերբակալուած են Ճափոնի մէջ, 1928էն 1933 :

ՔՈՒՊԱՅԻ մէջ նոր յեղափոխութիւն մը ծագելով, իշխանութեան գլուխ անցաւ ազգայնական Մանտիէթա : Վեցերորդ նախագահն է այս, 1933 օգոստոսէն ի վեր, իսկ չորրորդը՝ 48 ժամէ ի վեր···

Յ.

Հ. Դ.

## *Փարիզ եւ շրջակաները*

*ԱՂԲԻՒՐ - ՍԵՐՈԲ, Հրազդան եւ Քրիստափոր միացեալ խումբերու բոլոր ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը երկուշաբթի իրիկուն ժամը 8·30ին, 32 Ave. des Cobelins ի վերնայարկը։*

**Գաւառ**

*ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆԻ Կոկշք խումբի դասախօսական ժողովը այսօր կէսօրէ վերջ ժամը 3ին, Հ. Յ. Դ. Դուրեան Գրադարանին մէջ։ Կը խօսի՝ ընկ. Ց. Ջէքիեան։ Կը հրաւիրուին բոլոր ընկերները։*

*ղաքական խնդիրներէն : Քիչ մը Թող փարին ներքին եւ տնտեսական ցաւերու : Ասկէ չորս – հինգ տարի առաջ երբ Պոլիս էի, ազդասէր քանի մը Հայեր ներկայացան Ասլանեան եպիսկոպոսին եւ հաշիւ պահանջեցին : Հաշիւը չտալէ զատ այդ Հայերը 24 ժամ «Քարաքոլ ալթը» ըրաւ եւ ըսաւ.— էնկիւրիի դուռները բաց են : Տեղահանութեան ժամանակ երբ որ Սեբաստիոյ երիտասարդութիւնը դէպի ըսպանդանոց կ'առաջնորդուէր, երբ ամբողջ բնակչութիւնը, ծեր եւ երեխայ, այր եւ կին, գեղեցիկ հարսներ եւ աղջիկներ, Ղանձա մարգարէն ալ մէջը ըլլալով դէպի Ղարտաշլարն ի վեր ափ առած էին, դէպի անապատ, դէպի Տէր Զօր, քաղաքիս եպիսկոպոս առաջնորդը իր հաւատքը ուրացաւ, ճերմակ կանաչ «սարուխ»ը փաթթելով ման եկաւ : Ոչ Տ · Տ · կղերականներ, ոչ, այդպէս չըլլար հովուութիւնը : Հովիւը կը նմանի զօրավար ի, պէտք է իր խաչը պատեանէն հանէ ժողովուրդին առջեւէն քալէ, ժողովուրդը քաջալերէ, միշտ սէր, միութիւն քարոզէ, համերաշխութիւն քարոզէ, եղբայր եղբօր դէմ չլարէ, արկածալի ճամբաներէ զգուշանայ : Քանի որ ազգը մէկ ուխտի մը համար նահատակուեցաւ պէտք է մինչեւ մեր վերջին շունչը աշխատինք, մինչեւ որ մեր նպատակին հասնինք :*

Պ · Կէտիկեան (Հնչակեան)

*Հ · Յ · Դ · ԼԻՈՆԻ Զաւրղարեան Գրադարանը փոխադրուած է* 14 Rue François - Garcin, *ընկ · Քէնտիրեանի ճաշարանը :*

ՊԼԻՏԱՅԷՆ (Ալճերիա) Անշէն Որբուկ եւ իր քոյրը 100 փրանք կը նուիրեն Ֆ · Կ · Խաչի, ի յիշատակ իրենց հօրաքրոջ՝ Սուրբիկ Ղազարեանի (ծնեալ Արզումանեան) դառնաղէտ մահուան առթիւ : Ստանալ համապատասխան ընկալագրով « Յառաջ »ի վար – չութենէն :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

–– Տիկին Հայկանոյշ Դարբինեան, հօր անուն՝ Յարութիւն, մօր անուն՝ Սիրանոյշ, կը փնտռէ իր եղբայրները՝ Կարապետ, Յովհաննէս (մեծ եղբօր անունը չյիշեր) Յարութիւնեաններ : Կը կարծուի թէ Կարապետ կը գտնուի Պոլիս, իսկ Յովհաննէս Սիրէի (Յունաստան) որբանոցը : Իրենց մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել Tarpinian Nichanի, 3 Rue de Lavoier, Viviez (Aveyron), France :

Կը խնդրուի արտասահմանեան թերթերէն արտատպել :

Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13e)
Imprimerie A. DER (AGOPIAN)

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

***կազմակերպուած Փոքր տ'Իթալիի Դպրոցասէր Տիկնանց Միութեան մասնաճիւղին եւ մասնակցութեամբ շրջանիս դպրոցի Տիկնանց Միութեան։***

Այսօր կիրակի ցերեկ ժամը 2.30ին, Պ. Յովհաննէսեանի ընդարձակ եւ շքեղ սրահին մէջ, 13 rue Pierre Curie, Kr.- Bicètre

*կը ներկայացուի* ***Մեծապատիւ Մուրացկանները***

*կը մասնակցին Գ. ՎԱՀԱՆ, Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ եւ ԳՄԲԷԹԵԱՆ*
*ԳՄԲԷԹԵԱՆ կ'երգէ Օմար Խայեամի քառեակները*

## Թ Է Յ Ա Ս Ե Ղ Ա Ն

Եոզկատի Շրջանի Հայրենակցական Միութեան թէյասեղանը տեղի կ'ունենայ այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2·30ին, 6 Bld. Rodin, Իսի լէ Մուլինօ :

*Հաղ · միջոցներ .— Փորթ Վէրսայլէն եւ Փորթ Օթէօյէն առնել հանրակառք թիւ 23, 32 եւ իջնել Կար տ'Իսի :*

## ՅԵՐԵԿՈՅԹ Ի ՊԱՏԻՒ Պ. Լ. ԲԱՇԱԼԵԱՆԻ

ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

Այսօր կիրակի, կէսօրէ վերջ ժամը 2·30ին
Միւթիւալիթէի I եւ Y սրահներուն մէջ
կը նախագահէ Պ · Գ · ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ

*Գեղարուեստական մաս .—*

**Raymond Worms.**— (Violoncelliste, soliste des grands concerts), **André Lermyte.**— (Pianiste des concerts symphoniques Pasdeloup), **Maurice Blondel.**— (Violoniste, soliste des concerts symphoniques Pasdeloup) :

*Կը խօսին .—*

*ՏԻԿԻՆ ԱՆԱՅԻՍ՝ Լ · Բաշալեանի գրական գործունէութիւնը, Ռ · ԶԱՐԴԱՐԵԱՆ՝* « Ցեղին ձայնը » *(արտասանութիւն), Ա · ՉՕՊԱՆԵԱՆ՝ Լ · Բաշալեանի հանրային գործունէութիւնը, Մ · ՊԱՐՍԱՄԵԱՆ՝ Հ · Գ · Ընկերակցութեան կողմէ եւ Պ · Լ · ԲԱՇԱԼԵԱՆ :*

*Երգ՝* Պ· Քէչէճեանի կողմէ:

Ընկերակցութեան բոլոր անդամները եւ համակիրները կը հրաւիրուին ցերեկոյթին :

Հանդէսին եւ գինեձօնի ծախսերու մասնակցութեան համար կը գանձուի **5 փրանք** :

*Մասնաւոր հրաւիրագիր ղրկուած չէ :*

*Այս առթիւ բռնուեցան 20 հրացան, 25 ատրճանակ եւ մէկ ռումբ, ինչպէս եւ բազմաթիւ համայնավարական թռուցիկներ: 15 հոգի ձերբակալուեցան, բայց քիչ յետոյ արձակուեցան:*

*Սոֆիայէն կը հեռագրեն թէ համայնավարները անօթութեան արշաւ մը պիտի կատարեն փետր. 1ին: Ոստիկանութիւնը արտակարգ միջոցներ ձեռք առած է: Մինչեւ փետր. 2 արգիլուած է որ եւ ցոյց, թափօր, ժողով կամ համախմբում:*

## Գործազրկութիւնը կ'աւելնայ Ֆրանսայի մէջ

Աշխատանքի Գրասենեակին վերջին տեղեկագիրը կը յայտնէր թէ 343,000 նպաստընկալ գործազուրկներ կան: Զախսկողմեան թերթ մը դիտել կուտայ թէ գործ ունեցող բանուորներու թիւն է 13,287,126, իսկ դեկտեմբերի ընթացքին գործազուրկներու թիւը աւելցած է 733,078 հոգի:

Յ.



Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձանները

*ՊԱՆԵՕ – ՔԱՇԱՆԻ « Արծիւ » ենթակոմիտէի դասախօսական ժողովը տեղի կ'ունենայ վաղը Երկուշաբթի իրիկուն, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին:*

*Կը խօսի՝ ընկ. Ա. ՋԱՄԱԼԵԱՆ:*

## Գաւառ

*ՍԷՆ ԹԷԹԻԷՆԻ Կէփին խումբի ընկերական վիճաբանական ժողովը այսօր Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 2.30ին, սովորական հաւաքատեղին:*

ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

Այսօր կիրակի կէս օրէ վերջ, ժամը 2ին, *ՅԱՌԱՋ*ի խմբագրատունը

*կը դասախօսէ՝ Պ. Ս. ՎՐԱՑԵԱՆ*

դասախօսութենէն վերջ **ԹԷՅԱՍԵՂԱՆ**

կը հրաւիրուին անդամները եւ համակիրները

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

## Ընկերահամակրական դասախօսութիւն

կազմակերպուած՝ ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՕՅԻ Հ. Յ. Դ. ՊԱՏ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

*Այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 6ին իրԴրադարանին մէջ կը դասախօսէ ընկ. Ա. Թ., նիւթ՝* Երիտասարդ Թուրքիան եւ Հայերը

*Կը հրաւիրուին քաղաքի, Սէն Լուի Պատ. Միութեան ընկերները եւ տեղւոյս ընկերներն ու համակիրները:*



# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Փարիզի Հայ Ուսանողական Միութեան կողմէ

Այսօր Կիրակի իրիկուն ժամը 8.45ին, **Journal**ի սրահին մէջ

**(100 rue Richelieu — Métro Richelieu Drouot)**

**Mr. MEILLET Membre de l'Institut, professeur au Collège de France,** (պատուոյ նախագահ), Պ. Շ. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ *իր սիրայօժար մասնակցութիւնը կը բերէ հովանաւորելով հանդէսին գեղարուեստական բաժինը:*

*Կը մասնակցին նմանապէս փարիզահայ յայտնի արուեստագէտներէն Օր.* Պիւլպիւլեան, Օր. Ղազարոսեան, Օր. Երամեան *եւ* Պ. Պարթեւեան, Տիկին Ժ. Շահպարոնեան *եւ հանրածանօթ թառիստ* Պ. Ժօրժ, *պիտի ընկերանան Նիսի Ազգերու հանդէսին մասնակցող Հայ Ուսանող. խումբը:*

*Ուսանողութեան կողմէ կը ներկայացուի՝ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ*

*Ցօրինուած եւ աշխատուած ուսանողներու կողմէ:*

*Գիներ՝* 10 *եւ* 5 *ֆրանք*




**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme, PARIS (13e)**

**Le Gérant: H. STEPHAN**

